Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—78*



# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 36-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*Սովետական ժողովուրդը և ամբողջ աշխարհի աշխատավորները տոնում են Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձը։*

*36 տարի առաջ մեր երկրի ժողովուրդները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, տապալեցին կապիտալիստների ու կալվածատերերի իշխանությունը և հաստատեցին աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը։*

*Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մարդկության պատմության մեջ բացեց նոր դարաշրջան՝ կապիտալիզմի խորտակման և սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը։*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիան մահացու վերք հասցրեց կապիտալիզմին, խարխլեց և թուլացրեց իմպերիալիզմի հիմքերը, հեշտացրեց միջազգային պրոլետարիատի պայ-*

*քարը կապիտալիզմի դեմ։ Մեր Կոմունիստական պարտիան ազգային ուժից վերածվեց միջազգային, ինտերնացիոնալ ուժի, համաշխարհային ռևոլյուցիոն և բանվորական շարժման «Հարվածային բրիգադայի»։*

*Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը մեր երկրում հաջողությամբ կառուցեց սոցիալիստական հասարակարգ։ ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցումը Լենինի պատգամների կատարման, Կոմունիստական պարտիայի, նրա իմաստուն ղեկավարության կազմակերպող և ուղղություն տվող մեծ գործունեության արդյունք է, բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի հերոսական աշխատանքի արդյունքը։*

***

*Սովետական Միությունն անխորտակելի հզորությամբ և ստեղծագործական ուժերով լի, հաջողությամբ առաջ է ընթանում կոմունիստական հասարակարգի կառուցման ուղիով։*

*Սովետական Միության ժողովուրդները Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձը տոնում են սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի ասպարեզում ձեռք բերած վիթխարի հաջողություններով։*



*Կենսագործելով ՍՄԿՊ 19-րդ համագումարի որոշումները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդն անձնվիրաբար պայքարում է հինգերորդ հնգամյակի կատարման և գերակատարման համար, նորանոր նվաճումներ է ձեռք բերում սոցիալիստական էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման ասպարեզում։ Տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների, սովետական մարդկանց հերոսական աշխատանքի և Կոմունիստական պարտիայի իմաստուն քաղաքականության շնորհիվ, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսությունն աննախընթաց վերելք է ապրում։ Մեր երկրի հզորության, սովետական ժողովրդի նյութական բարեկեցության աճի հիմքը սոցիալիստական արդյունաբերությունն է։ Այժմ մենք ունենք հզոր, տեխնիկապես կատարյալ ծանր ինդուստրիա։ Եթե ցարական Ռուսաստանը 1913 թվականին արտադրում էր պողպատ 4,22 միլիոն տոննա, ածուխ՝ 29 միլիոն տոննա, նավթ՝ 9 միլիոն տոննա, ապա Սովետական Միությունը 1940 թվականին արտադրում էր պողպատ՝ 18,3 միլիոն տոննա, ածուխ՝ 166 միլիոն տոննա, նավթ՝ 31 միլիոն տոննա, իսկ 1953 թվականին արտադրելու է պողպատ ավելի, քան 38 մի-*

լիոն տոննա, ածուխ՝ ավելի, քան 320 միլիոն տոննա, նավթ՝ ավելի, քան 52 միլիոն տոննա։

Է՛լ ավելի մեծ չափերով է աճել ՍՍՌՄ արդյունաբերական արտադրանքը՝ 1924/25 թվականների համեմատությամբ։ Այժմ մեր երկրում արտադրվում է պողպատ՝ 21 անգամ, ածուխ՝ 19 անգամ, էլեկտրաէներգիա՝ 45 անգամ ավելի շատ, քան 1924/25 տնտեսական տարում։ Պարտիայի 14-րդ համագումարից հետո անցած 28 տարում արդյունաբերական արտադրանքի թողարկումը ավելացել է 29 անգամ, իսկ արտադրության միջոցների արտադրությունը՝ 55 անգամ։ Ծանր ինդուստրիայի զարգացման հետ մեկտեղ մեր երկրում աճել և զարգացել է երկաթուղային ու ջրային տրանսպորտը, ստեղծվել է ավտոմոբիլային և օդային տրանսպորտ։ 1925 թվականից մինչև 1953 թվականն ընկած ժամանակաշրջանում, տրանսպորտի բոլոր տեսակների բեռնաշրջանառությունը աճել է 13 և կես անգամ, ըստ որում երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունն ավելացել է ավելի քան 15 անգամ։

Աշխարհում ոչ մի երկիր չի իմացել և չէր կարող իմանալ ինդուստրիալ զարգացման



այդպիսի բարձր տեմպեր։ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության քաղաքականության նպատակն է այսուհետև ևս ամեն կերպ զարգացնել ծանր ինդուստրիան։ Պարտիան երբեք չի մոռանում լենինյան-ստալինյան ցուցումը, որ ծանր ինդուստրիան հանդիսանում է սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի հիմքը, որ առանց նրա զարգացման, չի կարելի ապահովել թեթև արդյունաբերության, գյուղատնտեսության արտադրողական ուժերի աճը և ամրապնդել մեր երկրի պաշտպանունակությունը։ Ծանր ինդուստրիայի բազայի վրա մեր երկրում ստեղծվել են բոլոր հնարավորությունները թեթև և սննդի արդյունաբերության զարգացման, ժողովրդական սպառման առարկաների արտադրության աճման համար։ 1953 թվականին կարտադրվի բամբակե գործվածքներ 5 միլիարդ 399 միլիոն մետր կամ 34 տոկոսով ավելի, քան արտադրվում էր 1940 թվականին, բրդե գործվածքներ՝ ավելի քան 200 միլիոն մետր կամ մոտավորապես 70 տոկոսով ավելի, քան 1940 թվականին, մետաքսե գործվածքներ՝ ավելի քան 400 միլիոն մետր կամ ավելի քան հինգ անգամ շատ, քան 1940 թվականին, շաքար՝ 3 միլիոն 600

հազար տոննա կամ համարյա 70 տոկոսով ավելի, քան 1940 թվականին, կենդանական յուղ՝ 400 հազար տոննա, որը համարյա 80 տոկոսով կգերազանցի կենդանական յուղի արդյունաբերական արտադրության նախապատերազմյան մակարդակը։

Պարտիան և կառավարությունը խնդիր են դրել, որպեսզի մոտակա 2—3 տարում խիստ բարձրացվի բնակչության ապահովվածությունը պարենային և արդյունաբերական ապրանքներով՝ մսով և կաթնամթերքներով, ձկով և ձկնամթերքներով, յուղով, շաքարով, հրուշակեղենով, գործվածքեղենով, հագուստեղենով, կոշկեղենով, ամանեղենով, կահույքով և կուլտուր-կենցաղային ու տնային գործածության այլ առարկաներով, զգալիորեն բարձրացվի բնակչության ապահովվածությունը ժողովրդական սպառման բոլոր ապրանքներով։ Ժողովրդական սպառման առարկաների արտադրության շեշտակի վերելքի ապահովումը պահանջում է գյուղատնտեսության հետագա զարգացումը և վերելքը, որովհետև գյուղատնտեսությունը բնակչությանը մատակարարում է պարեն, իսկ թեթև արդյունաբերությանը՝ հումք։

Սոցիալիստական գյուղատնտեսությունը,



կոլտնտեսային հզոր կարգը, կոլտնտեսությունները և սովխոզները բոլոր հնարավորություններն ունեն իրենց առջև դրված կարևորագույն խնդրի լուծման, գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության և հանրային անասնաբուծության մթերատվության արագ բարձրացման համար։ Այդ են վկայում գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած վիթխարի հաջողությունները։ Կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը տարեցտարի աճում և ամրապնդվում է, ավելանում է գյուղատնտեսական արտադրանքը, բարձրանում է կոլտնտեսականների նյութական և կուլտուրական մակարդակը։ Մեր երկիրն ապահոված է հացով։ Այժմ, մեր երկրում գրեթե 2 անգամ շատ հացահատիկ է արտադրվում, քան նախառևոլյուցիոն Ռուսաստանում։ Նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ զգալիորեն ավելացել են բամբակի, շաքարի ճակնդեղի և անասնաբուծության մթերքների պետական մթերումները։ Մեծ աշխատանք է կատարվել գյուղատնտեսությունը նոր տեխնիկայով հագեցնելու ուղղությամբ։ Գյուղատնտեսական արտադրության շատ ճյուղերի լիակատար մեխանիզացման շնորհիվ, հեշտացել է

կոլտնտեսային գյուղացիության աշխատանքը, բարձրացել է նրա արտադրողականությունը։ Սոցիալիստական գյուղատնտեսությունը ցուցադրել է իր անվիճելի գերազանցությունը ոչ միայն մանր ապրանքային գյուղացիական, այլև խոշոր կապիտալիստական հողատիրության նկատմամբ։

ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումներում մշակված են ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման արմատական հարցերը, նրա բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման ուղիները։

Սովետական կառավարությունը և Կոմունիստական պարտիան ոչ մի ջանք չեն խնայում գյուղատնտեսական արտադրության մեխանիզացիայի մակարդակի բարձրացման համար։ 1954 թվականից մինչև 1957 թվականի մայիսի մեկը գյուղատնտեսությունը պետք է ստանա ընդհանուր օգտագործման առնվազն 500 հազար տրակտոր՝ փոխադրած 15 ուժանոցի և 250 հազար հեռաշար հերկի տրակտոր, մինչև 1954 թվականը գյուղատնտեսությունը կստանա 110 հազար բեռնատար ավտոմեքենա, ինքնաթափ և հենասարք (շասսի), 12.000 մարդատար ավ-



տոմեքենա, 4.600 մետաղահատ հաստոց, ինչպես նաև այլ սարքավորում՝ ՄՏԿ-ների և նորոգման ձեռնարկությունների հագեցման համար։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումները անասնաբուծության հետագա զարգացման, կարտոֆիլի և բանջարեղենի արտադրության ավելացման, մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման, սովետական առևտրի հետագա զարգացման միջոցառումների մասին և գյուղատնտեսական հարկի նոր օրենքը, անշուշտ բարձրացնում են կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը և անհրաժեշտ պայմաններ են ստեղծում ամբողջ սոցիալիստական գյուղատնտեսության հուժկու վերելքի ապահովման համար։

Գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու խնդրի պրակտիկ լուծումը մեր երկրում կոմունիզմի կառուցման ծրագրի բաղկացուցիչ մասն է։ Այժմ այդ խնդիրը մեր առջև կանգնել է որպես կենսական, համաժողովրդական խնդիր։ Համաժողովրդական պայքար կազմակերպել «Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցա-

ումների մասին» ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումի որոշումների կենսագործման համար, նշանակում է պայքարել կոմունիզմի կառուցման ծրագրի իրականացման համար։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ ձեռք բերված հաջողությունների հիման վրա բարձրանում է սովետական ժողովրդի կյանքի նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։ Դրա վառ արտահայտությունն այն է, որ մեր երկրում տարեցտարի զգալիորեն ավելանում է մասսայական սպառման ապրանքների թողարկումը, իրագործվում է արդյունաբերական և պարենային ապրանքների գների սիստեմատիկ իջեցումը։

1947 թվականից Սովետական Միությունում 6 անգամ կատարվել է մասսայական սպառման ապրանքների գների իջեցում։ Այժմ աշխատավորները նույն դրամով, որ նրանք ծախսում էին 1947 թվականին, կարող են մեկ կիլոգրամի փոխարեն գնել 2,5 կիլոգրամ ցորենի հաց, մեկ կիլոգրամի փոխարեն 2,4 կիլոգրամ միս, 2,4 կիլոգրամ կարագ, 2,3 կիլոգրամ մակարոն, 2,5 կիլոգրամ կարտոֆիլ, 3 կիլոգրամ միրգ և այլն։ Ներկայումս վերարկուների, կոստյումների և



կոշիկեղենի գները մոտավորապես մեկ ու կես անգամ ավելի ցածր են, քան 1947 թվականին։ Զգալիորեն իջել են կուլտուրական ապրանքների և տնային գործածության առարկաների գները։ Մասսայական սպառման ապրանքների գների իջեցման շնորհիվ, ռեալ աշխատավարձի աճի հետ մեկտեղ աճում է նաև աշխատավորների դրամական աշխատավարձը։ Վերջին տարիներս բանվորների և ծառայողների դրամական աշխատավարձն ավելացել է մոտ 1,5 անգամ։

Տարեցտարի ավելանում են բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների ռեալ եկամուտները։ Բանվորների և ծառայողների մեկ աշխատողին ընկնող ռեալ եկամուտները 1952 թվականին՝ 68 տոկոսով, կոլտնտեսականներինը՝ 60 տոկոսով բարձր էին, քան 1940 թվականին։

1940 թվականից մինչև 1951 թվականը ազգային եկամուտը ՍՍՌՄ-ում աճել է 83 տոկոսով, իսկ 1952 թվականին, 1951 թվականի համեմատությամբ՝ 11 տոկոսով։ Իրենց անձնական նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման համար ՍՍՌՄ աշխատավորներն ստանում են ազգային եկամտի մոտ 3/4-ը, իսկ մնացած մասը հատկացվում է սոցիալիստական ար-

տադրության ընդլայնման և համապետական ու հասարակական մյուս կարիքներին։

Հինգերորդ հնգամյակի ընթացքում ազգային եկամուտը կավելանա առնվազն 60 տոկոսով, իսկ բանվորների ծառայողների ռեալ աշխատավարձը, հաշված մանրածախ գների իջեցումը, կբարձրանա առնվազն 35 տոկոսով։

Արդյունաբերության ու գյուղատնտեսության նոր և հզոր վերելքի կապակցությամբ՝ է՛լ ավելի է ծավալվում ապրանքաշրջանառությունը։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի «Սովետական առևտրի հետագա զարգացման միջոցառումների մասին» նոր որոշմամբ 1954 թվականին պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը, 1950 թվականի համեմատությամբ ավելացվում է 72 տոկոսով (համադրելի գներով), հնգամյա պլանով 1955 թվականի համար նախատեսված 70 տոկոսի դիմաց, այսինքն հնգամյա պլանի առաջադրանքը կկատարվի 1954 թվականին։ 1955 թվականին մանրածախ ապրանքաշրջանառությունը, 1950 թվականի համեմատությամբ, ավելացվելու է մոտավորապես երկու անգամ։

Սովետական ժողովրդի նյութական բարե-



կեցության բարելավման ուղղությամբ պարտիայի և կառավարության որոշումները Սովետական Միության ուժի և հզորության ապացույցն են, մեր արդյունաբերության և գյուղատնտեսության հուժկու վերելքի արդյունքը։ Սովետական պետությունը միլիարդավոր ռուբլիներ է ծախսում աշխատավորների կուլտուր-կենցաղային անվճար սպասարկման, լուսավորության, առողջապահության, սոցիալական ապահովության, երիտասարդության արտադրական ուսուցման և բնակչությանը տրվող վճարումների ու արտոնությունների վրա։

Բնակարանային շինարարությանը կատարվող հատկացումները նախորդ հնգամյակի համեմատությամբ ավելացել են մոտավորապես երկու անգամ։ Հնգամյակի տարիներին կկառուցվեն մոտ 105 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ նոր բնակելի տներ։ Բնակարանային և կոմունալ ծառայությունների վճարման համար բանվորի ծախսը կազմում է նրա աշխատավարձի մոտավորապես 4 տոկոսը։

Սովետական պետությունը մեծ ուշադրություն է նվիրում լուսավորության հետագա վերելքին, ամենուրեք իրականացվում է ընդհանուր յոթնամյա պարտադիր ուսուցումը։

Բուհերում, տեխնիկումներում սովորում է ավելի քան 3 միլիոն մարդ։ Սովորողների ընդհանուր թիվը ներառյալ ուսուցման բոլոր տեսակները, ընթացիկ տարում կազմում է 57 միլիոն մարդ։

Մոտակա տարիներին մեր երկրում ընդհանուր յոթնամյա կրթությունից անցում կկատարվի ընդհանուր պարտադիր տասնամյա կրթության՝ սկզբում քաղաքներում, իսկ ապա նաև գյուղական վայրերում։ Սովետական պետությունը մեծ հոգատարություն է ցուցաբերում աշխատավորության բուժսպասարկման և առողջության պահպանման մասին։ Տարեցտարի ընդլայնվում է բժշկական ու մանկական հիմնարկների, հանգստյան տների, սանատորիաների ցանցը։ 1953 թվականին, անցյալ տարվա համեմատությամբ նախատեսված է դպրոցների շինարարությունն ավելացնել 30 տոկոսով, մանկապարտեզների և մանկամսուրների շինարարությունը՝ 40 տոկոսով և հիվանդանոցների շինարարությունը՝ 54 տոկոսով։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը անշեղորեն հոգ են տանում և բոլոր հնարավորություններն ըստեղծել են սովետական գիտության, կուլտուրայի, գրականության և արվեստի հետագա



զարգացման համար։ Գիտության և կուլտուրայի բնագավառում աշխատողները սովետական գիտությունը հարստացնում են նոր նվաճումներով, մեր ժողովրդին տալիս են բարձրարժեք գեղարվեստական ստեղծագործություններ և այլն։

Սովետական ժողովուրդների համերաշխ ընտանիքում Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձը էկոնոմիկայի և կուլտուրայի բնագավառում ձեռք բերած նշանակալից հաջողություններով է դիմավորում նաև Սովետական Հայաստանի աշխատավորությունը։

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքը հինգերորդ հնգամյակի առաջին երկու տարում աճել է 30 տոկոսով, 1952 թվականին 1940 թվականի մակարդակը գերազանցելով 3,2 անգամ, իսկ 1953 թվականի առաջին կիսամյակում, 1952 թվականի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքն ավելացել է 15,7 տոկոսով։

Ընթացիկ տարում թողարկվելիք արդյունաբերական արտադրանքի ծավալը ավելի

քան չորս անգամ կգերազանցի նախապատերազմյան 1940 թվականի ծավալը։

Վերջին տարիներին զգալիորեն ավելացել է ռեսպուբլիկայի հիդրոէլեկտրակայանների կարողությունը, որը, անշուշտ, նոր նշանակալից էտապ է հանդիսանում արդյունաբերության զարգացման գործում։ Որոշակի հաջողություններ են ձեռք բերվել նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացման ասպարեզում։ Բարձրացել է բերքատվությունը, ավելացել է գյուղատնտեսական արտադրանքի համախառն բերքը, ընդլայնվել են ցանքատարածությունները։ Կոլտնտեսությունների դրամական եկամուտները 1953 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, աճել են ավելի քան երկու անգամ, անբաժանելի ֆոնդերը՝ երեք ու կես անգամ, իսկ արտադրության հիմնական միջոցները եռապատկվել են։ Հայաստանի գյուղատնտեսությունը հասել է մեքենայացման բարձր մակարդակի։ Վերջին երկու տարվա ընթացքում տրակտորային պարկի կարողությունը ավելացել է մեկ ու կես անգամ, ներկայումս ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 80 տոկոսից ավելին էլեկտրիֆիկացված է և էլեկտրաէներգիան հաջողու-



թյամբ օգտագործվում է գյուղատնտեսական արտադրության մեջ։

Արդյունաբերության և գյուղատնտեսության բուռն աճի հիման վրա անշեղորեն բարձրանում է ռեսպուբլիկայի բնակչության բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը։

Նախահոկտեմբերյան այս օրերին մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, ՄՏԿ-ներում և սովխոզներում ավելի ու ավելի է ծավալվում համաժողովրդական սոցիալիստական մրցությունը՝ մեր երկրի առջև դրված հոյակապ խնդիրները հաջողությամբ կատարելու, Մեծ Հոկտեմբերի 36-րդ տարեդարձը նոր հաջողություններով նշանավորելու համար։

Կիրովի անվան գործարանը ժամկետից շուտ և բոլոր ցուցանիշներով կատարեց 9 ամսվա առաջադրանքը, տնտեսելով հսկայական քանակությամբ հումք։ Արտադրական հիանալի հաջողությունների են հասել Ղափանի և Երևանի պահածոների գործարանների, Երևանի մահուդի, ծխախոտի ֆաբրիկաների, ձեթ-օճառ կոմբինատի, Ալավերդու քիմիական գործարանի և ռեսպուբլիկայի

ջատ այլ ձեռնարկությունների կոլեկտիվներ։

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձը արտադրական մեծ նվաճումներով են դիմավորում Շահումյանի, Ստեփանավանի շրջանների անասնապահները, Հոկտեմբերյանի բամբակագործները, Շամշադինի առաջավոր ծխախոտագործները և գյուղատնտեսության մյուս ճյուղերի աշխատավորները։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումները ամենուրեք առաջ են բերում մասսաների քաղաքական ու աշխատանքային ակտիվության նոր վերելք։ Սովետական մարդիկ ցուցադրում են իրենց վճռականությունը և ուժ ու եռանդ չեն խնայում պարտիայի առաջադրած խնդիրների հաջող կատարման համար։ Գնալով ավելի ու ավելի լայնորեն ծավալվում է մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը, շարժման մեջ են դրրվում բոլոր միջոցներն ու ուժերը՝ կոլտնտեսությունների, ՄՏԿ-ների և սովխոզների հզոր վերելքի ապահովման համար։

Մեր ժողովրդին հաղթանակից հաղթանակ է տանում Սովետական Միության Կոմունիստական պարտիան։ Պատմությունը չգիտե մեկ ուրիշ այնպիսի պարտիա, որն այնքան



հզոր ազդեցություն գործեր հասարակական զարգացման ամբողջ ընթացքի վրա, ինչպես Կոմունիստական պարտիան։

Ամբողջ սովետական ժողովուրդը անսահմանորեն վստահում է մեր պարտիային, նրան համարում է իր քաղաքական ղեկավարը և առաջնորդը, իր շահերի արտահայտիչը։ Եվ դա հասկանալի է, որովհետև ոչ մի պարտիա այնպես ճիշտ, այնպես խորը չի հասկանում աշխատավոր ժողովրդի իղձերն ու ձգտումները, ոչ մի պարտիա այնքան հավատարմորեն չի ծառայում ժողովրդին, ինչպես Կոմունիստական պարտիան։

Այժմ Կոմունիստական պարտիան հաջողությամբ լուծում է կոմունիզմի կառուցման, բազմազգ սոցիալիստական պետության հետագա ամրապնդման, արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա հզոր վերելքի, բոլոր սովետական մարդկանց կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի անընդհատ բարձրացման կարևորագույն խնդիրները։

Կոմունիստական պարտիայի ամբողջ գործունեությունը տոգորված է խոր հավատով ժողովրդի նկատմամբ, աշխատավորների ռևոլյուցիոն եռանդի նկատմամբ։ Մեր պար-

տիայի ուժը ժողովրդի հետ նրա ունեցած անխզելի կապի մեջ է։

Պարտիան իր մեջ մարմնավորում է այն ամենը՝ լավագույնը և հերոսականը, որ ունի սովետական ժողովուրդը։ Վ. Ի. Լենինը գրում էր. «Մենք հավատում ենք մեր պարտիային, մենք նրա մեջ տեսնում ենք մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը»։ Ժողովրդի ուժը պարտիայի շուրջը նրա համախմբվածության մեջ է։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությունը սովետական կարգի ամրության ու անսասանության և մեր ժողովրդի բոլոր հաջողությունների վճռական պայմանն է։



Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձը նոր հաջողություններով են դիմավորում ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները։

Ընթացիկ տարվա սկզբին ժողովրդական Չինաստանի արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքը գրեթե բոլոր ցուցանիշներով գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ Չինաստանի պետական ձեռնարկությունները տալիս են ծանր



արդյունաբերության արտադրանքի 80 տոկոսը և թեթև արդյունաբերության արտադրանքի 50 տոկոսը։ Այս տարի երկրում կառուցվում և վերակառուցվում են 21 մետալուրգիական ու քիմիական գործարան, 24 մեքենաշինական գործարան և 24 էլեկտրակայան։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան խոշոր հաջողություններ է ձեռք բերել գյուղատնտեսության զարգացման գործում։ Դեռևս 1952 թվականին հացահատիկի համախառն բերքը կազմեց ավելի քան 9,7 միլիարդ փութ, այսինքն 3 տարվա ընթացքում ավելացավ 40 տոկոսով։

Խոշոր հաջողությունների են հասել Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրները։ 1952 թվականին արդյունաբերական արտադրանքի ծավալը նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ Լեհաստանում կազմեց 347 տոկոս, Չեխոսլովակիայում՝ 201 տոկոս, Հունգարիայում՝ 309 տոկոս, Ռումինիայում՝ 234 տոկոս, Ալբանիայում՝ 750 տոկոս։ Բուլղարիայում արդյունաբերական արտադրանքի ծավալը ավելացել է 4,3 անգամ։

Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի միջին-ամսական արդյունաբերական

արտադրությունը 1953 թվականին հասել է 1936 թվականի միջին-ամսական արդյունաբերական արտադրության 164,4 տոկոսին։ Արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած հաջողությունների հիման վրա աճում է ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորների նյութական-կուլտուրական մակարդակը։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում նոր կյանքի կառուցման գործում ձեռք բերված հաջողությունները արդյունք են այդ երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ճիշտ քաղաքականության, Սովետական Միության եղբայրական ու անշահախնդիր օգնության։

Այն ժամանակ, երբ Սովետական Միությունում և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում անշեղորեն զարգանում է էկոնոմիկան և անընդհատ բարձրանում է ժողովրդական մասսաների նյութական ու կուլտուրական մակարդակը, միանգամայն հակառակ պատկեր գոյություն ունի կապիտալիստական երկրներում։

Միայն անցյալ տարվա առաջին կեսին Ամերիկայի Միացյալ Նահանգներում ավտոմոբիլային արդյունաբերության արտադրանքը իջավ 30 տոկոսով, տեքստիլ ար-



դյունաբերությանը՝ 36 տոկոսով և այլն։ Ճանր դրության մեջ է գտնվում և դեգրադացիա է ապրում ԱՄՆ-ի և մյուս կապիտալիստական երկրների գյուղատնտեսությունը։

ԱՄՆ-ի և նրանից կախում ունեցող կապիտալիստական երկրների էկոնոմիկան գտնվում է ճգնաժամային պայմաններում։

Կապիտալիստական երկրներում գործազուրկների և կիսագործազուրկների բանակը հասնում է 40—45 միլիոն մարդու։ Միայն ԱՄՆ-ում կան 3 միլիոն լրիվ և 10 միլիոն մասնակի գործազուրկներ։

1953 թվականին, 1948 թվականի համեմատությամբ, ապրուստի արժեքը բարձրացել է. Ավստրիայում՝ 99 տոկոսով, Ֆինլանդիայում՝ 57 տոկոսով, Ֆրանսիայում՝ 45 տոկոսով, Անգլիայում՝ 31 տոկոսով, Նորվեգիայում՝ 35 տոկոսով։ 1953 թվականին ԱՄՆ-ում հարկերը 1937—1938 թվականի համեմատությամբ ավելացել են 12 անգամ։

Համաշխարհային տիրապետության ամերիկյան հավակնորդները ռեակցիայի սև ուժերին համախմբելով ագրեսիվ հյուսիսատլանտյան բլոկի շուրջը, վերածնելով պատերազմի օջախները Եվրոպայում և Ասիայում, ձգտում են մարդկությանը քաշել նոր համաշխարհային սպանդի մեջ։ Ամերիկյան

իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունը որոշակիորեն դրսևորվում է գերմանական հարցում։ Ամերիկյան ռազմամոլները Արևմտյան Գերմանիան դիտում են որպես պլացդարմ՝ ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ նոր պատերազմ մղելու համար։ Գերմանիայում ամերիկյան քաղաքականության նպատակները վերջերս մի անգամ ևս ձևակերպեց ԱՄՆ-ի պետական քարտուղարի տեղակալ Սմիթը։ Նա Դետրոյտում հայտարարել է, թե Միացյալ Նահանգները մտադիր են «պաշտպանողական միավորման» և «եվրոպական բանակի» դրոշակի տակ, ինչ էլ որ լինի զինել Արևմտյան Գերմանիան։

Այժմ գերմանական ժողովրդի հետևողական պայքարը երկրի միասնության և անկախության համար, ցույց է տալիս, որ ամերիկյան իմպերիալիստների հանցավոր գործողությունները գերմանական ժողովրդի նկատմամբ՝ դատապարտված են տապալման։ Բավական է մատնանշել, որ Արևմտյան Գերմանիայում 1953 թվականի սեպտեմբերի 6-ին Բունդեստագի ընտրությունների ժամանակ, չնայած ոստիկանական տեռորի պայմաններին, 9 միլիոն ընտրողներ քվեարկեցին



Ադենաուերի ագրեսիվ ռազմական քաղաքականության դեմ։

Գերմանական ժողովուրդը բոլոր խաղաղասեր ժողովուրդների աջակցությամբ անկասկած իր մեջ ուժեր կգտնի, որպեսզի թույլ չտա Արևմտյան Գերմանիան դարձնել նոր ագրեսիայի օջախ, կհասնի միասնական, խաղաղասեր դեմոկրատական Գերմանիայի ստեղծմանը։

Նոր համաշխարհային պատերազմի նախապատրաստության և իմպերիալիստների ամեն տեսակի ագրեսիվ գործողությունների դեմ հետևողականորեն պայքարում են բոլոր երկրների խաղաղասեր ժողովուրդները։ Նոր պատերազմի հրձիգների դեմ մղվող պայքարում խաղաղության ուժերը հասել են խոշոր հաջողությունների։ Ներկայիս միջազգային իրադրությունը բնութագրվում է ամենից առաջ այն լուրջ հաջողություններով, որ ձեռք են բերել Սովետական Միությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, խաղաղության և դեմոկրատիայի ամբողջ լագերը միջազգային լարվածության թուլացման ու խաղաղության համար մղվող պայքարում։ Խաղաղության համար ժողովուրդ-

ների ակտիվ պայքարը արդեն տվել է որոշակի արդյունքներ։

Բոլոր կապիտալիստական երկրներում լայնորեն ծավալվում է գործադուլային շարժումը։ Այս տարվա օգոստոսին Ֆրանսիայում տեղի ունեցավ երեքշաբաթյա գործադուլ։ 4 միլիոն բանվորներ ու ծառայողներ մասնակցեցին կառավարության արտակարգ դեկրետների, միլիտարիզացիայի և պատերազմի նախապատրաստության քաղաքականության դեմ ուղղված բողոքին։

Խաղաղության, աշխատանքի և հացի համար բանվոր դասակարգի մղած պայքարի պատմության մեջ փայլուն էջեր գրեցին Իտալիայի աշխատավորները։ Կապիտալիստական երկրների բոլոր դեմոկրատական ուժերի պայքարի հաջողության պայմանը բանվորական շարժման միասնությունն է։ 1953 թվականի սեպտեմբերի 24-ին Իտալիայում տեղի ունեցավ ընդհանուր գործադուլ, որին մասնակցեց 8 միլիոն մարդ։ Վիեննայում տեղի ունեցած Պրոֆմիությունների 3-րդ համաշխարհային կոնգրեսը մի անգամ ևս ցույց տվեց, որ աշխարհի ժողովուրդների ջանքերն ուղղված են պատերազ-



մի վտանգի ուժեղացմանը խանգարելուն, խաղաղության մեծ գործի պաշտպանությանն ու ամրապնդմանը։ Խաղաղության համար մղվող պայքարի ավանգարդում է ընթանում սոցիալիզմի ու դեմոկրատիայի 800 միլիոնանոց ճակատը՝ հզոր Սովետական Միության գլխավորությամբ։

Սովետական Միությունը կենսականորեն շահագրգռված է խաղաղության գործում։

«Սովետական կառավարության համար, մեզ բոլորիս՝ սովետական մարդկանց համար,—նշել է ընկեր Մալենկովը,—խաղաղությունն ամրապնդելու և ժողովուրդների անվտանգությունն ապահովելու գործը տակտիկայի և դիվանագիտական մանևրների հարց չէ։ Դա մեր գլխավոր գիծն է արտաքին քաղաքականության բնագավառում»։

Աշխարհի խաղաղասեր մարդկությունը համախմբված խաղաղության մեծ դրոշակակիր Սովետական Միության շուրջը էլ ավելի է ուժեղացնում պայքարը հանուն ժողովուրդների անվտանգության, հանուն կայուն ու տևական խաղաղության։

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձին Սովետական Միությունը գտնվում է իր ուժերի

ծաղկման շրջանում և ընթանում է դեպի նորանոր հաջողություններ։ Դեռևս երբեք մեր Հայրենիքը չի եղել այնքան մեծ ու հզոր, կենսական ուժերով ու ստեղծագործական եռանդով լի, ինչպես ներկայումս։ Սովետական Միությունն ուժեղ է մեր հասարակության բարոյա-քաղաքական միասնությամբ, ժողովուրդների անխախտ բարեկամությամբ, սովետական մարդկանց ջերմ հայրենասիրությամբ, Կոմունիստական պարտիայի և Սովետական Կառավարության շուրջը նրաց համախմբվածությամբ։ Աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանան կանգնեցնել սովետական հասարակության առաջընթաց շարժումը։

Լենինիզմի դրոշով, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, Սովետական ժողովուրդը վստահորեն առաջ է ընթանում դեպի կոմունիզմի հաղթանակը։

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

---

# ԳԱՂԱՓԱՐԱՊԵՍ ՀԱԳԵՑՎԱԾ ՑՈՒՑԱԴՐԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՀԱՄԱՐ

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի ագիտացիայի սեկտորի վարիչ

Ցուցադրական ագիտացիան վիթխարի դեր է խաղում աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։ Նա հզոր միջոց է պարտիայի և կառավարության որոշումները մասսայականացնելու և այն բոլորի սեփականությունը դարձնելու համար։ Ցուցադրական ագիտացիան ունի մոբիլիզացնող ուժ և իրավամբ հանդիսանում է աշխատավորների մեջ տարվող քաղաքական աշխատանքում մեր պարտիայի գաղափարական, մարտական զենքերից մեկը։

Որպեսզի ցուցադրական ագիտացիան մոբիլիզացնող ուժ դառնա, նա, ամենից առաջ, պետք է լինի քաղաքականապես հագեցված, կոնկրետ ու ճշմարտացի, ետ չմնա

կյանքից, համապատասխանի օրվա պահանջներին։

Ցուցադրական ագիտացիայի կազմակերպման ձևերը բազմազան են։ Նա կարող է կազմակերպվել պլակատների, դիագրամների, լոզունգների, կոչերի, պատվոտախտակի, արտադրության ցուցանիշների տախտակի, պատի թերթի և այլ ձևերով։

Դիագրամներ կազմելու համար, օրինակ, պարտիական կազմակերպությունները կարող են օգտագործել հինգերորդ հնգամյակի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ սեսիայի, ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտկոմի որոշումներից վերցրած այնպիսի տվյալներ, որոնք պատկերում են արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի զարգացումը ՍՍՌՄ-ում։

Լոզունգի նյութ կարող են ծառայել 19-րդ համագումարի դիրեկտիվներից, պարտիայի և կառավարության ղեկավարների ելույթներից վերցրած առանձին ասույթները, ինչպես նաև ՍՄԿՊ Կենտկոմի այն կոչերը, որոնք ուղղված են նոր հնգամյակի խնդիրների կատարմանը և գերակատարմանը։



Հնգամյա պլանի առաջադրանքների կատարման գործում հսկայական նշանակություն ունի աշխատավորների պայքարը խնայողության ռեժիմի, աշխատանքի արտադրողականության բարձրացման և թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար։ Այդ պատճառով էլ հատուկ հոգատարության առարկա պետք է դառնա այնպիսի ցուցադրական ագիտացիայի կազմակերպումը, որն արտադրական ձեռնարկությունների աշխատողներին կոչ անի՝ պայքարել յուրաքանչյուր օպերացիայի ժամանակ խնայողության խստագույն ռեժիմի համար, թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման, որակի բարելավման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Ցուցադրական ագիտացիան նպատակասլաց կազմակերպելու գործում աշխատանքի դրական փորձ ունի Լենինականի գույպայի-տրիկոտաժի ֆաբրիկայի սկզբնական պարտկազմակերպությունը։

Ֆաբրիկայի բոլոր ցեխերում կան ցուցադրական ագիտացիայի բազմազան նյութեր՝ նվիրված պարտիայի 19-րդ համագումարի որոշումներին, ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում Սովետական

կառավարության ղեկավար ընկեր Գ. Մ. Մալենկովի արտասանած ճառին, ՍՄԿՊ Կենտկոմի կոչերին։ Գեղեցիկ տառերով գրվել և պատերին փակցվել են ինչպես առանձին ցեխերի, նույնպես և Անդրկովկասի երեք քաղաքների՝ Լենինականի, Քութայիսի, Կիրովականի միջև ծավալված սոցիալիստական մրցության պայմանագրերը։ Ամեն ամիս լրացվում է սոցիալիստական մրցության ցուցանիշների տախտակը։ Կազմակերպված է պատվո-տախտակ, որի վրա փակցվում են ֆաբրիկայի լավագույն մարդկանց՝ սոցիալիստական մրցության մեջ հաղթողների նկարները և համառոտ տեղեկություն, թե ինչպես են նրանք կատարել ստանձնած պարտավորությունները։ Աչքի ընկնող տեղերում փակցված են կոչեր աշխատանքի արտադրողականության բարձրացման, հումքը տնտեսելու և արտադրանքի որակը բարելավելու մասին։

Այդ կոչերից մեկի տեքստում, օրինակ, գրված է.

«Ընկեր բանվոր. շարաթական մեկ կիլոգրամ թել տնտեսելու դեպքում՝ տարվա վերջում դու երկրին կտաս 4.900 զույգ լրացուցիչ գուլպա։ Պայքարիր խստագույն խնայողության համար»։



Գործվածքային ցեխում, գեղեցիկ ձևավորված պլակատի վրա պատկերված է նույն ցեխի բանվորուհի Ռոզա Խաչատրյանի աշխատանքի մեթոդը, որը ընդօրինակելով Ստալինյան մրցանակի լաուրեատ Կովալյովին հասել է արտադրական բարձր ցուցանիշների։ Ներկայումս ցեխի բոլոր բանվորները աշխատում են սոցմրցության առաջավոր Խաչատրյանի օրինակով ու սալիս են հումքի մեծ տնտեսում և սիստեմատիկորեն գերակատարում են արտադրական նորմաները, թողարկելով գերազանց որակի արտադրանք։

Ցեխերում ամեն օր լույս են ընծայվում «Կայծակ» թերթիկներ, որոնք բանվորներին հաղորդում են պլանների կատարման ընթացքը ցեխերում և ֆաբրիկայում։

Բազմազան ցուցադրական ագիտացիան իր բարերար ազդեցությունն է ունենում արտադրության վրա։ Ֆաբրիկան սիստեմատիկորեն գերակատարում է լայն սպառման ապրանքների արտադրության պլանները, օրըստօրե իջեցնում է արտադրանքի ինքնարժեքը և բարելավում որակը։ Ֆաբրիկայի բոլոր բրիգադները պայքարում են «Գերազանց որակի բրիգադա»-յի բարձր կոչման արժանանալու համար։ Ֆաբրիկայի 50

բրիգադայից 7-ին տրված է «Գերազանց որակի բրիգադա»-յի կոչում։

Հինգերորդ հնգամյակի պլանների կատարման ու գերակատարման համար մղվող պայքարում կարևոր դեր են խաղում պատի թերթերը։

Երևանի Ավտոդողերի գործարանի բանվորների և ծառայողների մեջ մեծ համբավ ունի «Երևանի դողագործ» ամենօրյա պատի թերթը։ Այստեղ ամեն օր, առավոտյան ժամը 8-ին, փակցվում է գործարանի պատի թերթի թարմ համարը։ Նրա ամեն մի հոդվածը պատմում է այն մասին, թե ով, ինչպես է բարձրացրել աշխատանքի արտադրողականությունը, ինչպես է բարելավել թողարկված արտադրանքի որակը, ինչ միջոցներով է հասել արտադրանքի ինքնարժեքի իջեցման, նյութերի տնտեսման և այլն։ Պատի թերթը առանձին սրությամբ մերկացնում է աշխատանքային կարգապահության խախտման փաստերը, այն մարդկանց, որոնք չեն կատարում արտադրական պլանները, խոտան են թույլ տալիս և այլն։ Հոդվածների մեծ մասը հետագայում ցեխերում և բրիգադաներում նյութ է դառնում ագիտատորների զրույցների համար։

Ավտոդողերի գործարանի պարտիական



կազմակերպությունը խելացիորեն կիրառում է արտադրության առաջավորներին խրախուսելու զանազան ձևեր։ Գործարանում հիմնված են պատվո-տախտակ և սոցիալիստական մրցության ցուցանիշների տախտակ։ Պրակտիկայի մեջ է մտցվել արտադրության բոլոր ցուցանիշների գծով առաջավորներին պատվոգրեր տալը, բացի դրանից, պահվում է «Պատվո-գիրք», որի մեջ առաջավորների գրանցումը կատարվում է հանդիսավոր պայմաններում՝ գործարանի կոլեկտիվի ընդհանուր ժողովում։ Ներկայումս «Պատվո գրքում» գրվել են գործարանի 44 առաջավորների անունները։ «Պատվո գրքի» 43-րդ էջում, օրինակ զետեղված է ընկ. Յ. Ներսիսյանի լուսանկարը, որի տակ գրված է. «Յենիկ Շատիլովնա Ներսիսյան, հավաքման ցեխի բրասլետագործուհի, ՀամԼԿԵՄ անդամ, աշխատում է գործարանում 1949 թվականից, առաջավոր բանվորուհի, արտադրական նորմաները կատարում է 180—200 տոկոսով, թողարկելով գերազանց որակի արտադրանք»։

Ցուցադրական ագիտացիան գործուն ազդեցություն է ունենում գործարանի կոլեկտիվի վրա։ Գործարանը այս տարվա տաս ամսվա պլանը կատարեց 103,1 տոկոսով,

տալով տասնյակ տոննա հիմնական հումքի տնտեսում։

«ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումը գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի համար դնում է նոր խնդիրներ։ Այդ խնդիրները նախատեսում են երկու—երեք տարում խիստ բարձրացնել մեր երկրի բնակչության ապահովվածությունը պարենային ապրանքներով և դրա հետ միասին՝ կոլտնտեսային գյուղացիության ամբողջ մասսայի համար ապահովել նյութական բարեկեցության ավելի բարձր մակարդակ։

Ներկայումս ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների, ՄՏ կայանների և սովխոզների պարտիական կազմակերպությունները լայն բացատրական աշխատանք են տանում սոցիալիստական գյուղի աշխատավորների մեջ, նրանց պարզաբանելով պարտիայի և կառավարության որոշումները։

Այդ աշխատանքը բարելավելու և ագիտատորներին օգնելու նպատակով անհրաժեշտ են այնպիսի նյութեր, որոնք ակնառու կերպով ցույց տան գյուղատնտեսության զարգացման ուղիները, որ նախատես-



ված են ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումներով։

Ցուցադրական ագիտացիոն նյութեր ընտրելիս անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել գյուղատնտեսական կուլտուրաների մշակման առաջավոր տեխնիկան լրիվ և արդյունավետ օգտագործելու, առաջավոր կոլտնտեսությունների, ՄՏ կայանների և սովխոզների աշխատանքի դրական փորձն արմատավորելու վրա։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումներում կարևոր տեղ է հատկացված կոլտնտեսությունների և կոլտնտեսականների տնտեսական շահագրգռվածության բարձրացման հարցին։ Մեր ագիտատորների պարտքն է՝ պարզաբանել այդ տնտեսական խրախուսանքների կարևոր նշանակությունը։ Դա կարելի է կոլտնտեսականներին, ՄՏ կայանների և սովխոզների աշխատավորներին ցույց տալ ցուցադրական ագիտացիոն նյութերի օգնությամբ։

Մեզ մոտ վաղուց գոյություն ունեն ծխախոտագործական և բամբակագործական կոլտնտեսություններին տնտեսապես խրախուսելու ձևեր և պարտիական կազմակերպություններն արդեն որոշ փորձ են ձեռք բերել այդ ուղղությամբ տարվող բա-

ցատրական աշխատանքը բարելավելու համար։

Որպեսզի ցույց տրվի, օրինակ, թե ծխախոտագործական կոլտնտեսությունների համար որքան շահավետ է ծխախոտի բարձր բերք ստանալը, նրանք կարող էին բերել հետևյալ օրինակը.

Հայտնի է, որ «Սամսուն» ծխախոտի մեկ տոննայի համար, եթե առաջին տեսակի է, կոլտնտեսությունը ստանում է տասնյակ հազար ռուբլի ավելի, քան ցածր տեսակների համար։ Այս փաստը ակնառու կերպով ցույց է տալիս, թե կոլտնտեսության համար տնտեսապես որքա՞ն շահավետ է լավ բերք աճեցնելը և պետությանը բարձր տեսակի ծխախոտ հանձնելը։

Այս նույն ձևով կարելի է ցույց տալ տնտեսության եկամուտների աճը, որը ըստացվում է գյուղատնտեսական նաև մյուս մթերքների մթերման գների բարձրացման շնորհիվ։

Քաղաքականապես հագեցված, մոբիլիզացնող և գեղարվեստորեն ձևավորված ցուցադրական ագիտացիան՝ պարտիական կազմակերպության լավագույն օգնականն է հինգերորդ հնգամյակի խնդիրների կատարման համար մղվող պայքարում։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՁՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ՆԱԽԱՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## (Թվեր և փաստեր)

*Մտնելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ, ռեսպուբլիկայի աշխատավորները աշխատանքային նոր հաջողություններով են նշանավորում Մեծ Հոկտեմբերի 36-րդ տարեդարձը։ Արտադրական ձեռնարկությունների բազմաթիվ կոլեկտիվներ արդեն կատարել են տարեկան արտադրական պլանները և այժմ պլանից դուրս երկրին տալիս են լրացուցիչ արտադրանք։*

*Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունը պատվով կատարեց Երևանի Շինանյութերի գործարանի երկաթբետոնի ցեխը։ Ցեխի բոլոր բրիգադները հոկտեմբերի 17-ին կատարեցին տարեկան արտադրական պլանը և նոր պարտավորություն ստանձնեցին. Նրանք խոստացան մինչև տարվա վերջը լրացուցիչ կերպով երկրին տալ 70 հազար ռուբլու բարձր որակի շինարարական նյութեր։*

✪ Երևանի մահուդի ֆաբրիկայի կոլեկտիվը նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության պայմանագրով պարտավորություն էր ստանձնել հոկտեմբեր ամսին պլանից 7 հազար մետր ավելի բրդյա գործվածքեղեն թողարկել։ Այժմ, մահուդագործները 7 հազարի փոխարեն պլանից դուրս երկրին տվել են 40 հազար մետր բրդյա գործվածքեղեն։ Ֆաբրիկայում գրեթե բոլոր մրցողները կատարում և գերակատարում են օրվա առաջադրանքը։

✪ Սոցիալիստական մրցության շնորհիվ արտադրական խոշոր հաջողության հասավ Երևանի դերմատին-մոմլաթի ֆաբրիկայի կոլեկտիվը։ Ֆաբրիկան տարեկան արտադրական պլանը կատարեց ինն ու կես ամսում՝ հոկտեմբերի 15-ին։ Այդ նույն ժամանակաշրջանում, անցյալ տարվա համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 26 տոկոսով, իսկ արտադրանքի ինքնարժեքն իջել է 11 տոկոսով։ Ֆաբրիկայում գնալով ավելանում է առաջին տեսակի արտադրանքի թողարկումը։ Միաժամանակ ուժեղ պայքար է ծավալվում հումք, էլեկտրաէներգիա և օժանդակ նյութեր տնտեսելու համար։ Մինչև հիմա ֆաբրիկայում տնտեսվել է 450 հազար ռուբլու արժողությամբ հումք, էլեկտրաէներգիա և արտադրական նշանակություն ունեցող այլ նյութեր։

✪ Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցու-



թյունից հաղթանակով դուրս եկավ Անիպեմզայի ցեմենտի գործարանի կոլեկտիվը։ Գործարանն այս տարվա արտադրական պլանը կատարեց հոկտեմբերի 1-ին և այժմ պլանից դուրս երկրին տալիս է հարյուրավոր տոննա ցեմենտ։

✪ Լենինականի տեքստիլ կոմբինատի մանվածքային ֆաբրիկայի կոլեկտիվը մրցելով եղբայրական Ադրբեջանի Կիրովաբադ քաղաքի տեքստիլագործների հետ, նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ հասել է նշանակալից հաջողությունների։ Ֆաբրիկան գերակատարել է անցած 9 ամսվա արտադրական պլանը և պլանից դուրս թողարկել է 2.100 տոննա մանվածք։ Արտադրանքի որակի բարձրացման և հումքի ու էլեկտրաէներգիայի խնայողության միջոցով ֆաբրիկան ունի 134 հազար ռուբլու օգուտ։ Ինն ամսում տնտեսված է մոտ 76 տոննա բամբակ և 157 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության 128 առաջավորներ 9 ամսում կատարել են 10 ամսվա արտադրական նորմա, իսկ 17 հոգի՝ 11 ամսվա։

✪ Սոցիալիստական մրցության պայմանագրով ստանձնած իրենց պարտավորությունները պատվով են կատարում Երևանի քիմիական գործարանի բանվորներն ու ծառայողները, ինժեներա-տեխնիկական անձնակազմը։ Գործարանը հոկտեմբերի 10-ին կատարեց տարեկան արտադրական պլանը։ Այդ նույն ժա-

մանկամիջոցում գործարանը տնտեսել է 27 հազար ռուբլու արժողությամբ հումք, վառելիք ու էլեկտրաէներգիա և տվել է 275 հազար ռուբլու արտապլանային կուտակում։ Գործարանի թողարկած արտադրանքի ինքնարժեքն իջել է 30 տոկոսով։

✪ Աշխատանքային խանդավառությամբ են համակված ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները։ Նրանք ուժ և եռանդ չեն խնայում Մեծ Հոկտեմբերի 36-րդ տարեդարձը տնտեսական նոր հաջողություններով նշանավորելու համար։ Ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլտնտեսություններ և սովխոզներ բարելավելով գյուղատնտեսական կուլտուրաների մշակությունը, այժմ առատ բերք են ստանում։

✪ Էջմիածնի շրջանի Փարաքար գյուղի կոլտնտեսությունը բամբակի յուրաքանչյուր հեկտարից արդեն հավաքել է մոտ 28 ցենտներ բերք և դեռ շարունակում է բամբակի բերքահավաքը։ Կոլտնտեսությունը ժամկետից 15 օր շուտ կատարեց բամբակի հանձնման տարեկան պլանը։ Պետությանը հանձնված բամբակն առաջին տեսակի է։ Շրջանում շատ կոլտնտեսություններ, ինչպես, օրինակ, Արևշատ, Արագած, Ծաղկունք, Այգեշատ գյուղերի կոլտնտեսությունները, խաղողի բարձր բերք են ստանում։ Արևշատ գյուղի կոլտնտեսությունը խաղողի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 80 ցենտներ միջին բերք, իսկ առանձին այգեմասերից՝ մինչև 150 ցենտներ։ Արագած գյուղի կոլտնտեսությունը, անցյալ



տարվա 25 ցենտների փոխարեն, այս տարի խաղողի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 80—85 ցենտներ բերք։

✪ Ղափանի շրջանի Դավիթբեկ գյուղի կոլտնտեսությունը 400 հեկտար հացահատիկային ցանքի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 18—26 ցենտներ բերք։

✪ Ալավերդու շրջանի Լամբալուի սովխոզը խաղողի ամեն մի հեկտարից ստացել է 120 ցենտներ բերք, իսկ առանձին բրիգադաներ՝ մինչև 130 ցենտներ բերք։ Սովխոզը պետությանն է հանձնել 600 տոննա խաղող։

Կատարելով իրենց ստանձնած պարտավորությունները, սովխոզի բանվորներն ու բանվորուհիները ընդարձակում են նաև խաղողի և պտղատու ծառերի այգիները։ Նրանք պարտավորվել են մինչև գյուղատնտեսական տարվա վերջը տնկել 22 հեկտար խաղողի նոր այգի։

✪ Մեծ Հոկտեմբերի 36-րդ տարեդարձը աշխատանքային լուրջ հաջողություններով է դիմավորում Հայկոնսերվտրեստի Վորոշիլովի անվան սովխոզի կոլեկտիվը։ Սովխոզը կատարել է կոնսերվի գործարանին պտուղ հանձնելու տարեկան պլանը։ Պլանով նախատեսված 1.250 տոննայի փոխարեն հանձնված է 1.300 տոննա պտուղ։

✪ Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձը աշխատանքային նոր հա-

ջողություններով է նշանավորում Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունը։ Կոլտնտեսության անասնապահները մինչև հոկտեմբերի 1-ը յուրաքանչյուր կովից ստացել են 2.293 կիլոգրամ կաթ։ Կոլտնտեսականները որոշել են առաջիկա տարում յուրաքանչյուր կովի միջին կաթնատվությունը հասցնել 3.400 կիլոգրամի, յուրաքանչյուր ոչխարից ստանալ 3 կիլոգրամ բուրդ և յուրաքանչյուր 100 ոչխարից ստանալ 120 գառ։

✪ Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության պայմանագրով ստանձնած պարտավորությունները պատվով են կատարում եղբայրական ռեսպուբլիկաների աշխատավորները։

Եղբայրական Ադրբեջանում

✪ Ղասախի շրջանի «Կոմինտերն» կոլտնտեսության կոլտնտեսականները ժամկետից շուտ կատարել են բամբակի հանձնման տարեկան պլանը և Հայրենիքին լրացուցիչ տվել են մեծ քանակությամբ առաջին և ընտիր տեսակի բամբակի հումք։ Կոլտնտեսության շատ օղակներ հեկտարից ստանում են 35—36 ցենտներ բամբակ։ Բամբակի հանձնման տարեկան պլանը Պուշկինոյի շրջանը կատարել է 103 տոկոսով, № 6 սովխոզը՝ 127 տոկոսով։

Բամբակի հանձնման տարեկան պլանը կատարել են նաև Իմիշլիի շրջանի Ժդանովի անվան, Բարդայի շրջանի Կարլ Մարքսի անվան և շատ ուրիշ կոլտնտեսություններ։



Աղդաշի շրջանի Ալի Բայրամովի անվան կոլտնտեսությունը բամբակի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 32 ցենտներ բերք, պլանով նախատեսված 30 ցենտների փոխարեն։

✪ Նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության այս օրերին Ադրբեջանական ՍՍՌ-ի Արտյոմնեֆթ տրեստի նավթահորերում լայնորեն արմատավորվում է հորերի կրկնակի շահագործման առաջավոր մեթոդը։ Նավթահորերի կրկնակի շահագործման միջոցով մեծ չափերով ավելանում է նավթի հանույթը։ Արմատավորելով աշխատանքի առաջավոր այդ մեթոդը, տրեստի № 1 հանքի № 194 հորը, որ մինչև վերջերս օրական տալիս էր 600 կգ. նավթ, այժմ տալիս է 4 տոննա նավթ։ Նավթի օրվա հանույթը կրկնապատկել է № 180 նավթահորի կոլեկտիվը, իսկ № 181 նավթահորի կոլեկտիվը 12 անգամ ավելացրել է նավթի հանույթը։ Նավթի օրվա հանույթը մեծ չափերով ավելացել է ծովային 6-րդ հանքում։ Այստեղ կրկնակի շահագործման մեթոդով նավթի օրական հանույթն ավելացել է 100 տոննայով։

✪ Սոցմրցության շնորհիվ խոշոր հաջողություններ ձեռք բերել Ազիզբեկովնեֆթտրեստի նավթագործները։ Նրանք ժամկետից շուտ կատարեցին 10 ամսվա արտադրական պլանը։ Հորափորման արագությամբ գերակատարված է 5,3 տոկոսով և լրացուցիչ ի՛ր-

պով շահագործման է հանձնվել 6 նոր նավթահոր։ Մրցության բազմաթիվ առաջավորներ նավթահորերը փորում են նախատեսված ժամկետից 8—9 օր շուտ։

★ Նախատոնական սոցիալիստական մրցության մեջ նոր հաջողություն է ձեռք բերել Ազնեֆթ միավորման Նեֆթեչալանեֆթտրեստի կոլեկտիվը, որը հոկտեմբերի 13-ին կատարել է այս տարվա 10 ամսվա առաջադրանքը։ Այստեղ նավթի օրվա հանույթն ավելացել է 18 տոկոսով, տնտեսվել է մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա։ Նավթի ինքնարժեքի իջեցման հաշվին ստացվել է ավելի քան մեկ միլիոն ռուբլու շահույթ։

### Եղբայրական Վրաստանում

★ Վրացական ՍՍՌ-ի Թբիլիսիի Ստալինի անվան շոգեքարշա-վագոնանորոգման գործարանի մարդատար վագոնների ցեխի կոլեկտիվը կատարելով նախահոկտեմբերյան սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունը, լրիվ և արդյունավետ օգտագործելով ներքին ռեսուրսները, տվել է 500 հազար ռուբլու տնտեսում։ Մեծ թվով հնացած և անպետք համարվող դետալներ վերանորոգվում և օգտագործվում են։

★ Թբիլիսիի Կիրովի անվան դազգահաշինական գործարանի կոլեկտիվը խոշոր օգնություն է ցույց տալիս ռեսպուբլիկայի ՄՏԿ-ներին։ Մինչև հիմա գործարանը ՄՏԿ-ներին է ուղարկել 20 հատ կատարելագործված դազգահներ։ Գործարանի կոլեկտիվը



պարտավորվել է մինչև տարվա վերջը ՄՏԿ-ներին ուղարկել 413 կատարելագործված դազգահներ։

Գործարանում լայն մրցություն է ծավալվել գյուղատնտեսական մեքենաների ու գործիքների պատվերները ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու համար։ Ընթացիկ տարում ավտոնորոգման գործարանը կապիտալ նորոգման կենթարկի կոլտնտեսությունների 250 բեռնատար ավտոմեքենա։

★ Քարելիի շրջանի Լեռնեռի գյուղի կոլտնտեսությունը սոցիալիստական մրցության մեջ է մտել Կիրովականի շրջանի Սարահարթ գյուղի Չկալովի անվան կոլտնտեսության հետ։ Այդ երկու կոլտնտեսությունները էլ այժմ ստանում են ճակնդեղի բարձր բերք։

Լեռնեռի կոլտնտեսության Մ. Բեստաևի օղակը, որը խոստացել էր ստանալ ամեն մի հեկտարից 800 ցենտներ ճակնդեղ, պատվով է կատարում ստանձնած պարտավորությունը։ Նրա օղակը բերքահավաքի առաջին երկու օրում 0,25 հեկտարից ստացավ 200 ցենտներ ճակնդեղ, իսկ սարահարթցիները ճակնդեղի յուրաքանչյուր հեկտարից արդեն հավաքում են 500 ցենտներ բերք։



# ԳՐՔԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՃԸ ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ

*Սովետական ժողովրդի քաղաքական և կուլտուրական աճի նկատմամբ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ամենօրյա հոգատարության շնորհիվ մեր երկրում տարեցտարի ավելի շատ գիրք է հրատարակվում։ Միայն անցյալ տարի մեր երկրում հրատարակվել է 851 միլիոն 500 հազար օրինակ գիրք։ Դա 85,5 տոկոսով ավելի է 1940 թվականին հրատարակված գրքերի քանակից և մոտ 10 անգամ ավելի գրքերի այն հրատարակություններից, որ տեղի է ունեցել նախառևոլյուցիոն Ռուսաստանում։*

*Հետպատերազմյան տարիներին Սովետական Միության բոլոր ժողովուրդների լեզուներով, ավելի քան 350 միլիոն օրինակով հրատարակվել է Մարքսի, Էնգելսի, Լենինի, Ստալինի աշխատությունները։ Խոշոր աշխատանք է կատարված դասագրքերի հրատարակության ուղղությամբ։ Վերջին 8 տարվա ընթացքում լույս է տեսել 31 հազար անուն դասագիրք, մեկ միլիարդ 272 միլիոն օրինակով։ Մեծ չափերով ավելացել է գեղարվեստական գրականության հրատարակությունը։ 1952 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, 4 անգամ ավելացել է գեղարվեստական գրքի հրատարակությունը։*



*Սովետական կառավարությունը անհրաժեշտ միջոցներ է ձեռք առել թղթի արտադրությունն ավելացնելու և պոլիգրաֆարդյունաբերությունը զարգացնելու համար։ Պոլիգրաֆիական խոշոր ձեռնարկություններ են կառուցվում Յարոսլավլում, Կալինինյում, Սարատովում, Մինսկում և մյուս քաղաքներում։ Շուտով ՍՍՌՄ-ում ամեն տարի կհրատարակվի մեկ միլիարդ օրինակ գիրք։*

*Սովետական Միության մեջ այժմ գործում են 130 ռեսպուբլիկական, երկրային և մարզային գրքի հրատարակություններ, որոնք միայն 1952 թվականին ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների լեզուներով հրատարակել են մոտ 30 հազար անուն գիրք, 240 միլիոն օրինակ տիրաժով։*

Խմբագրի տեղակալ՝
Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

ՎՖ 04980 Պատվեր № 1014 Տիրաժ 9050
Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան,
Կնունյանցի № 8, 1953 թ.։

